Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՅԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (39)

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչության—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի,
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

**№ 8 (39)**

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1938

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պատ. խմբագիր՝ Բ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Գլավլիտի լիազոր Յ6.—3906. Պատվեր 345
Տիրաժ 8750
ՊԵՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ, ԵՐԵՎԱՆ,
ԼԵՆԻՆԻ ՓՈՂ. № 65

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեծ ընտանիքի իրավահավասար անդամն է:

Հայաստանը գրավում է 30 հազար քառ. կիլոմետր տարածություն, ունի մեկ միլիոն 221 հազար 300 բնակիչ:

Հայաստանի աշխատավորությունը Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ տապալեց դաշնակցական զզվելի կարգերը և հաստատեց խորհրդային իշխանություն:

Ծահագործող դասակարգերը խսպառ լիկվիդացիայի յեն յենթարկված, ժողովրդա-

կան տնտեսության մեջ անբաժանելիորեն տիրապետում է արտադրության սոցիալիստական յեղանակը։

Խորհրդային Հայաստանը վորպես Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության անբաժանելի մաս՝ 17 տարվա ընթացքում աճել ու ամրապնդվել է և այսօր Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին դիմավորում է վորպես ԽՍՀՄ-ի իրավահավասար հանրապետություններից մեկը։ Հայաստանը հետամնաց, սովի ու աղքատության յերկրից դարձել է ԽՍՀՄ-ի առաջավոր կուլտուրական հանրապետություններից մեկը։

Յեթե Հայաստանի բնակչության թիվը Փաշիստ դաշնակների տիրապետության որոք սիստեմատիկաբար նվազում էր և 1920 թվի նոյեմբերին հավասար էր ընդամենը 720 հազար հոգու, ապա խորհրդային իշխանության հաստատման հետևանքով բնակչության թիվն աճում է՝ (առ 1-ն հունվարի 37 թ.) հասնելով մեկ միլիոն 221 հազար 300 հոգու, այլ կերպ ասած՝ բնակչության թիվը գրեթե կրկնապատկվել է դաշնակների տիրապետության ժամանակաշրջանի համեմատությամբ։



Յեթե բնակչության աճը 1901—1914 թ. ընթացքում կազմել է տարեկան միջին հաշվով 1,36 տոկոս, ապա 1927—36 թ. թ. կազմում է 3,2 տոկոս։ Այս փաստը յերկրի տնտեսական-կուլտուրական աճման, բնակչության կուլտուրական, նյութական-կենցաղային բարեկեցության բարձրացման անհերքելի ապացույցն է։

Նախախորհրդային Հայաստանում՝ ցարական իշխանության և դաշնակների տիրապետության ժամանակ մինչև մեկ տարեկան հասակի յերեխաների մահացությունը կազմում էր 253, յուրաքանչյուր հազարից, իսկ 1935 թ. այդ թիվը նվազում է, իջնելով մինչև 83-ի։

Ժողովրդական տնտեսության և սոցիալիստական կուլտուրայի բարգավաճման կապակցությամբ, յերկրի բնակչության թվական կազմի աճմանը զուգընթաց փոխվում է նաև նրա սոցիալական կազմը։ Յեթե բանվոր-ծառայողների թիվը 1926 թ. կազմում էր Հայաստանի բնակչության 12,69 տոկոսը, ապա 1935 թ. յերկրի ինդուստրացման հետևանքով այդ թիվն աճեց, հասնելով 23,31 տոկոսի։ Անշուշտ, այդ թիվն այժմ՝ 1938 թ. ավելի մեծ է։

Սոցիալիստական արդյունաբերության զարգացման հետևանքով աճել է բանվորների թիվը, 1936 թվին հասնելով 104 հազար 508 հոգու, այլ կերպ ասած 1923 թվի համեմատությամբ աճել է 7 անգամ, իսկ արդյունաբերության մեջ աշխատող բանվորների և ծառայողների թիվն այդ նույն ժամանակամիջոցում աճել է մոտ 8 անգամ: 1937 թվին, 1936 թվի համեմատությամբ բանվորների ու ծառայողների թիվն աճել է 4,5 տոկոսով, իսկ արդյունաբերության մեջ աշխատող բանվոր-ծառայողներինը՝ 9 տոկոսով:

Հիմնովին փոխվել է գյուղի սոցիալական դեմքը: Կոլտնտեսային կարգն անբաժանելիորեն տիրապետող է հանդիսանում գյուղում: 1938 թվի հունվարի 1-ի տվյալներով Հայաստանի գյուղացիական տնտեսությունների 90 տոկոսը գտնվում է կոլտնտեսություններում:

Այսպիսով գյուղացիական, տնտեսապես հետամնաց, ցարիզմի գաղութ հանդիսացող խղճուկ Հայաստանը խորհրդային իշխանության հաղթանակի հետևանքով վերածվեց ինդուստրիալ և մեքենայացված գյուղատնտեսության երկրի:



## ԱՃՈՂ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կիրառման հետևանքով Հայաստանում աճել է արդյունաբերությունը: Դաշնակների տիրապետության շրջանից ժառանգություն մնացած ավերակների ու մոխրակույտերի վրա խորհրդային իշխանությունը տարածեց խոշոր գործարանների ու ֆաբրիկաների ցանց: Կառուցվել են նոր գիգանտներ: Ինչպիսիք են՝ Սինթետիկ կաուչուկի կոմբինատը, Քիմ. գործարանը, Լենինականի Մսի կոմբինատը, Տեքստիլ կոմբինատը, Մեխ. գործարանը, Ցեմենտի գործարանը, Պղնձի փլոտացիոն գործարանը, Քանաքեռզեսը և այլն:

Հայաստանում խորհրդային իշխանության հաստատման 17 տարվա ընթացքում, ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է մեկ միլիարդ 336 միլիոն 200 հազար ռուբլի: Միայն 2-րդ հնգամյակի չորս տարվա ընթացքում ներդրումը հասավ 754,5 միլիոն ռուբլու:

Նախապատերազմյան շրջանում Հայաստանում գոյություն ունեցող արդյունաբերական ճյուղերից ամենախոշորն Ալլահվեր-

դու և Ղափանի պղնձահանքերն եյին: Ելեկտրոեներգիայի արտադրությունը սահմանափակվում եր Յերևանում, Ալլահվերդում և Ղափանում յեղած չնչին կարողություն ունեցող ելեկտրոկայաններով: Իմպերիալիստական պատերազմի շրջանում և հատկապես դաշնակների տիրապետության օրոք յեղած առանց այն էլ խղճուկ արդյունաբերությունը գրեթե վոչնչացվեց: Արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը 1913 թվի 20,1 տոկոսից իջավ մինչև 10 տոկոսի, այն էլ քայքայված ու նույնպես հետադիմող գյուղատնտեսության արտադրանքի կրճատման պայմաններում:

Խորհրդային Հայաստանի ինդուստրացման հետևանքով, 1936 թվին հանրապետության մեջ ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի տեսակարար կշիռը (արդյունաբերության և գյուղատնտեսության) կազմում եր 68,8 տոկոս:

1917 թվին Հայաստանի արդյունաբերության խոշոր ճյուղը՝ պղնձի արդյունաբերությունը բոլորովին կանգ եր առել, հանքային ու գործարանային տնտեսությունը քայքայվել եր, ճիշտ նույն վիճակումն եյին



գտնվում նաև արդյունաբերության մյուս ճյուղերը: Միայն խորհրդային իշխանության հաստատումով վերջ դրվեց մինչ այդ թագավորող տնտեսական փլուզմանը և Հայաստանը կանգնեց սոցիալիստական շինարարության, ինդուստրացման ուղու վրա:

Արդյունաբերության համախառն արտադրանքը, վորը 1919 թվին կազմում եր 1,7 միլիոն ռուբլի, անցած 17 տարիների ընթացքում աճել ե ավելի, քան 127 անգամ: 1936 թվին արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ 216,4 միլիոն ռուբլու: 16 տարվա ընթացքում յերկրի ինդուստրացման մեջ ներդրված ե 553,8 միլիոն ռուբլի, վորից ելեկտրոշինարարության մեջ՝ 191 միլիոն ռուբլի, արդյունաբերության այլ ճյուղերում 362,8 միլիոն ռուբլի:

Արդյունաբերության արտադրանքի մի քանի ճյուղեր տալիս են աճման հետևյալ պատկերը (նատուրալ ցուցանիշներով) —

| | 1913 թ. | 1937 թ. |
|---|---|---|
| Պղնձառ տոններով | 367 | 4353 |
| Բյազ միլիոն մետրերով | չկար | 16,6 |
| Մակարոն տոններով | չկար | 2451 |
| Գինի հազար հեկտոլիտրերով | 18,8 | 136,9 |

| | | |
|---|---|---|
| Կոնսերվա (հազար՝ պայմանական տուփերով) | 1019 | 24.750 |

## ԷԼԵԿՏՐՈԷՆԵՐԳԻԱ

Ստեղծված նոր արդյունաբերությունն էլեկտրոէներգիայով ապահովելու համար, Հայաստանում կառուցվել են մի շարք խոշոր էլեկտրոկայաններ:

Ձորագեսը՝ 22,2 հազար կիլովատ կարողությամբ:

Առաջին և Երկրորդ Երևանները—6,96 հազար կիլովատ կարողությամբ:

Լենգեսը—5,28 հազար կիլովատ կարողությամբ:

Քանաքեռգեսը—Սևան-Զանգու կասկադի խոշորագույն գիգանտներից մեկը այժմ ունի 21 հազար կիլովատ կարողություն, որը հետագայում հասցվելու յե 88 հազար կիլովատի:

1937 թ. գոյություն ունեցող 42 էլեկտրոկայանների (ներառյալ նաև ֆաբրիկա-գործարանային էլեկտրոկայանները) ընդհանուր կարողությունը կազմում էր 66,1 հազար կիլովատ, 1913 թվականի 3,1 հազար կիլովատի և 1919 թ. 1,5 հազար կիլովատի փոխարեն:



## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, որը 1919 թվին կազմում էր 15,1 միլիոն ռուբլի, 1936 թ. հասավ 98,2 միլիոն ռուբլու և ամբողջ արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմում էր 31,2 տոկոս: Հայաստանիկային կուլտուրաների համախառն արտադրանքը 1936 թվականին՝ 1919 թ. համեմատությամբ աճել է ավելի, քան ութ անգամ: Այգեգործության արտադրանքն ավելի, քան յերկու անգամ, անասնապահության արտադրանքը մոտ ութ անգամ:

Սոցիալիստական դաշտերում կիրառվող ագրոմիջոցառումներն զգալիորեն բարձրացրել են բերքատվությունը: Եթե 1932 թվի հացահատիկի միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից յեղել է 5,1 ցենտներ, 1937 թվին հասել է 9,4 ցենտների, բամբակի բերքատվությունը 1932 թվին յեղել է (յուրաքանչյուր հեկտարից) 4,2 ցենտներ, 1937 թ. հասել է 12 ցենտների, ծխախոտինը 1932 թ. 6,2 ցենտներից 1937 թ. հասել է 9,2 ցենտների:

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները բացատրվում են գյուղատնտեսության կոլեկտիվացմամբ ու մեքենայացմամբ:

Գյուղատնտեսության մեջ, առ 1-ը հունվարի 1938 թ. կար 24 ՄՏ կայան, վորոնք սպասարկում էյին 22 շրջանների: 1936 թվին յեղած 22 ՄՏԿայանների փոխարեն, վորոնք սպասարկում էյին 20 շրջանների կոլտնտեսությունների 78,9 տոկոսը: ՄՏԿայանների տրակտորային պարկը, վորը 1931 թ. կազմում էր 74 տրակտոր՝ ընդամենը 870 ձիու ուժի կարողությամբ, առ 1-ն հունվարի 38 թ. հասել է 1111 տրակտորի՝ 17982 ձիու ուժի կարողությամբ, այսինքն՝ տրակտորների թիվն աճել է ավելի, քան 14 անգամ, իսկ տրակտորային պարկի կարողությունն՝ ավելի, քան 20 անգամ:

Գյուղատնտեսության մեջ, ներառյալ նաև ՄՏԿայանների մեքենայացումը, 1-ին հունվարի 38 թ. կար 1357 տրակտոր, մինչդեռ 1929 թ. յեղել է ընդամենը 163 տրակտոր: 1934 թ. Հայաստանում կար միայն յերկու կոմբայն, իսկ 1938 թվի հունվարի մեկին կար 132 կոմբայն, կալ-



սիչների թիվը հասել է 207-ի, 1929 թ. 39-ի փոխարեն:

Բերքահավաքի այլ մեքենաների թիվը (առանց կոմբայնների) հասել է 580-ի:

Ցանքերի տարածությունը նախապատերազմյան շրջանի 343,7 հազար հեկտարից, վորը 1919 թ. իջել էր մինչև 82,7 հազար հեկտարի, այժմ հասել է 443,3 հազար հեկտարի, այլ կերպ ասած՝ աճել է 29 տոկոսով, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ և ավելի քան 436 տոկոսով՝ դաշնակների տիրապետության ժամանակաշրջանի համեմատությամբ:

Անասնապահությունը, վորը գյուղատնտեսության վերակառուցման ու կոլեկտիվացման տարիներին դաշնակցական-կուլակային կատաղի պրովոկացիայի ազդեցության տակ զգալի վնաս կրեց, 1934 թ. սկսեց արագ կերպով վերականգնվել ու զարգանալ: Անասունների թվի աճը 1919 թ. համեմատությամբ հետևյալ պատկերն ունի.

Խոշոր յեղջյուրավոր անասունների թիվը 1919 թ. համեմատությամբ աճել է 2,5 անգամ.

Մանր յեղջյուրավոր անասուններինը՝ 2,6 անգամ.

Խոզերինը՝ 14,6 անգամ.

Ձիերինը՝ 2,7 անգամ:

1938 թ. հունվարի 1-ի տվյալներով, 1937 թ. հունվարի համեմատությամբ խոշոր յեղջյուրավոր անասունների աճը կազմում է 8,4 տոկոս, մանր յեղջյուրավոր անասուններինը՝ 15,6 տոկոս, խոզերինը՝ 26,3 տոկոս: Անասունների հանրայնացման պրոցեսն ընթանում է ուժեղ թափով: «Վոչ մի կոլտնտեսություն առանց ապրանքային ֆերմայի» լոզունգը գործ է դարձել: 1937 թ. առ 1-ը հունվարի 1071 կոլտնտեսություններից առանց ֆերմայի յեն մնացել միայն 38 կոլտնտեսություն և այն էլ բամբակագործական ու այգեգործական շրջաններում:

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ—ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության և ժողովուրդների առաջնորդ ընկեր ՍՏԱԼԻՆԻ կողմից կուսակցության 17-րդ համագումարում առաջադրված հիմնական խնդիրներից մեկը՝ բանվո-



րական ու կոլտնտեսային մասսաների բարեկեցության հետագա վերելքը, յերկրորդ հնգամյակի վերջում աշխատավորների սպառողական մակարդակը յերկու ու կես-յերեք անգամ բարձրացնելն իր արտացոլումը գտավ թեթև և սննդի արդյունաբերությունների արագ աճման մեջ: Վերջին տարիներին շահագործման հանձնվեցին՝ Լենինականի մսի կոմբինատը, մակարոնի, ծխախոտի, կարամելի ֆաբրիկները, յուղի, պանրի գործարանները, կարի, կոշկեղենի և գուլպաների ֆաբրիկները:

Բանվորների և ծառայողների տարեկան միջին աշխատավարձը 1925—26 թվերի 561 ռուբլուց աճել է, 1932 թ. հասնելով 1541 ռուբլու, այլ կերպ ասած՝ աճել է մոտ 300 տոկոսով, իսկ 1936 թ. կազմել է 3114 ռուբլի:

Մանրածախ շրջանառությունը Հայաստանում 1937 թ. հասել է 6759 միլիոն ռուբլու՝ 1924—25 թ. 25,8 միլիոն ռուբլու փոխարեն. այլ կերպ ասած՝ աճել է 26,2 անգամ:

Սոցիալիստական հատվածի հասարակական սննդի ցանցի շրջանառությունը 1937 թ. հասել է 46,2 միլիոն ռուբլու, 1924—

25 թ. թ.՝ 360 հազար ռուբլու փոխարեն, այսինքն՝ աճել է 128 անգամ:

Դրան զուգընթաց, ընդարձակվել է նաև սոցիալիստական հատվածի մանրածախ առևտրական ցանցը, վորը 1928 թ. 512 միավորից, 1938 թ. սկզբներին հասավ 2435 միավորի, այլ կերպ ասած՝ աճել է 375,5 տոկոսով: Մեկը մյուսի հետևից յերևան են գալիս նոր, կուլտուրական և կատարելագործված ունիվերսալ խանութներ: 1937 թ. սկզբին շահագործման հանձնվեց Յերևանի խոշոր ունիվերմագը:

Հանրայնացված բնակարանային ֆոնդը բանավաններում, շրջանային կենտրոններում և քաղաքներում առ մեկն հունվարի 1937 թ. կազմում է 546 հազար քառակուսի մետր, վորից խորհրդային իշխանության օրոք կառուցված է 421,9 հազար քառակուսի մետր:

***

Չնայած 1919 թ. սարսափելի համաճարակին, Հայաստանում բուժհիմնարկների ցանցը 28-ից չէր անցնում, իսկ այժմ՝



կան մի ամբողջ շարք այնպիսի բուժհիմնարկներ, վորոնց մասին նախահեղափոխական շրջանում յերազել անգամ չէր կարելի: Այժմ կան բժշկական չորս գիտահետազոտական ինստիտուտներ, 5 դիսպանսեր, մոր ու մանկան 33 կոնսուլտացիոններ, 31 հակամալարիային կայաններ և այլն: Հենց միայն հիվանդանոցների ու կլինիկաների թիվը 1936 թ. հասել է 55-ի (հազարների հասնող մահճակալներով):

Նախահեղափոխական շրջանում բոլորովին գոյություն չեն ունեցել մսուրներ: 1936 թվին Հայաստանում գործել են 73 մշտական և 503 սեզոնային մսուրներ: Մանկապարտեզների թիվը յերկրորդ հնգամյակում գրեթե կրկնապատկվեց՝ 1937–38 թ. հասնելով 424-ի, վորոնցում ընդգրկված են 19,5 հազար յերեխա, կան 634 մանկական հրապարակներ, վորոնք սպասարկում են 29,3 հազար մանուկների:

1933 թ. 31,7 հազար բնակչին ընկնում էր մեկ բժիշկ, իսկ 1936 թ. մեկ բժիշկ էր ընկնում 1,7 հազար բնակչին:

Առողջապահության և կուլտուրական շինարարության տեսակետից խոշոր նշանակություն ունի քաղաքների ու շրջկենտրոն-

ների բարեկարգումը: Հայաստանի մայրաքաղաք Երևանը, որը մինչև 1920 թ. իրենից ներկայացնում էր հողաշեն խըրճիթներով ու քանդված փողոցներով մի ավան, այժմ դարձել է բարեկարգ ու կուլտուրական քաղաք՝ նոր ջրմուղով, կոյուղով, առատ էլեկտրական լուսավորությամբ, տրամվայի գծերի ցանցով, բարեկարգ ու կանաչապատ փողոցներով: Երևանի տրամվայը, որը շահագործման հանձնվեց 1933 թ.,— միայն 1936 թ. ընթացքում փոխադրել է 26,9 միլիոն մարդ, իսկ 1937 թ. ուղևորների փոխադրումը կազմում է 33,4 միլիոն մարդ: Տրամվայի գծի յերկարությունը հասնում է 29,9 կիլոմետրի:

Նախախորհրդային շրջանում Երևանը զուրկ էր կոյուղուց, իսկ այժմ կոյուղու փողոցային ցանցի յերկարությունը հասնում է 21,8 կիլոմետրի: Երևան քաղաքի ջրմուղը 1937 թ. քաղաքին տվել է 6324 հազար խորանարդ մետր ջուր՝ 1928 թ. 688 հազար խորանարդ մետրի փոխարեն: Լենինական քաղաքում և մի շարք այլ շըրջաններում կառուցվում են ջրմուղու նոր գծեր:



## ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Տնտեսական բարգավաճման ու կենցաղային բարեկեցության աճմանը զուգընթաց, մեծ ծաղկման է հասել Հայաստանը նաև կուլտուրական շինարարության բնագավառում: Հարյուր-հազարավոր մարդիկ, որոնք անցյալում խավար էին և տգետ, այժմ հաղորդակից են դարձել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրային: Այդ կուլտուրական վերելքը տեղի յե ունեցել ամենաբազմազան ձևերով ու արտահայտություններով:

Այժմ Հայաստանը մինչև 44 տարեկան հասակ ունեցողների անգրագիտության վերացման նախօրյակին է գտնվում, այնինչ, դաշնակցության տիրապետության օրոք նրանց 90 տոկոսն անգրագետ էին: 1937 թ. գործում էին անգրագիտության վերացման 1232 դպրոց, որոնցում ընդգրկված էին 48,5 հազար հոգի, կիսագրագիտության վերացման 1168 դպրոց,— որոնցում ընդգրկված էին 47,1 հազար հոգի:

Ընդհանուր պարտադիր ուսումն իրականացնելու համար 1937—38 թ. թ. ուսումնական տարում մեզ մոտ գործում են 1180 տարրական, լրիվ և վոչ լրիվ միջնակարգ դպրոցներ, դաշնակցության տիրապետության ժամանակ (1918—19 թ. թ.) յեղած 154 կիսավեր, մեծ մասամբ չգործող յեկեղեցական-ծխական դպրոցների փոխարեն: Մեր դպրոցներում այժմ սովորում են ավելի քան 282,4 հազար աշակերտ: Բացի դրանից, բանվորների և աշխատավորների համար գործում են բարձր տիպի 177 դըպրոցներ, վորտեղ առանց արտադրությունից կտրվելու սովորում են 9769 հոգի: Ներկայումս մենք ունենք ավելի քան 15,8 հազար ուսանողություն, վորոնք ընդգրկված են 57 տեխնիկումներում, մասնագիտական միջնակարգ տիպի դպրոցներում, յերկու բանֆակներում և 9 բարձրագույն ուսումնական հաստատություններում: Բարձրագույն ուսումնական հաստատությունների թվին են պատկանում՝ Պետական համալսարանը, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Բժշկական, Մանկավարժական, Ուսուցչական, Յերաժշտական, Զոոանասնաբուժական ինստիտուտները և կոմունիստա-



կան ԲՈՒՀ-ն ու դպրոցները: Մեր թված ուսումնական հաստատություններում ու դպրոցներում այժմ սովորում են ավելի քան 300.000 հոգի (չհաշված զանազան դասընթացներն ու Կարմիր Բանակը) կամ Հայաստանի ամբողջ բնակչության 1/4 մասը:

Վոչնչացել են ազգային թշնամանքն ու կոտորածները, վորոնք կազմակերպում էյին դաշնակցականներն ու թուրքական բեկերը: Այժմ Հայաստանում ապրող բոլոր ժողովուրդները, վորպես մեկ ընտանիքի անդամներ լծված են սոցիալիստական շինարարության մեծ գործին:

Նախապատերազմյան շրջանում ու դաշնակների տիրապետության օրոք չկար գիտական և վոչ մի հիմնարկ, իսկ այժմ 1-ն հունվարի 38 թ. Հայաստանում 49 գիտական հիմնարկ կա, վորոնցից 6-ն արդյունաբերության գծով, 16-ը՝ գյուղատնտեսության, 9-ը՝ բնական գիտությունների ու մաթեմատիկայի, 9-ը՝ ժողովրդական լուսավորության և մեկն աշխարհագրության: Դրան պետք է ավելացնել նաև Գիտությունների Ակադեմիայի հայկական Ֆիլիալն իր գիտահետազոտա-

կան ցանցով, որն ընդգրկում է ժողովրդական տնտեսության մի ամբողջ շարք բնագավառներ:

Խորհրդային Հայաստանում ծաղկում են գրականությունն ու արվեստը: Այժմ Հայաստանում գործում է 20 թատրոն, այդ թվում՝ յերիտասարդ ոպերային թատրոնը, 175 կինո-թատրոն, որից 113-ը՝ գյուղական վայրերում, մինչդեռ, նախահեղափոխական գյուղը յերազել անգամ չեր կարող կինո-թատրոնի մասին:

Հայաստանի շրջաններում գործում են 484 ակումբային հիմնարկներ, 531 գրադարան, 8 թանգարան, կոնսերվատորիա և, վերջապես, Հայաստանն ունի սեփական կինո-արդյունաբերություն: Բավական է միայն ասել, որ դաշնակցական Հայաստանում գոյություն է ունեցել միայն մեկ մասնավոր թատրոն, որը նույնիսկ չուներ կատարողների մշտական կազմ:

Յերևանում ավարտվել է նոր մեծ կինո-թատրոնի շենքի կառուցումը՝ 1600 տեղով, կառուցվում է Ժողովրդական Տունը՝ 3,500 հանդիսականների համար և այլն:

Հայաստանում հրատարակվում է 47 անուն թերթ, որոնց 1/I—38 թ. ընդհանուր



տիրաժը հասել է 39,9 միլիոն օրինակի, միայն 1937 տարվա ընթացքում լույս են տեսել ավելի, քան 610 անուն գրքեր, ավելի քան 4,6 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով: Այժմ հրատարակվում է 21 անուն ժուռնալ և այլն:

Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունները 1921 թ. մինչև 1937 թ. բաց են թողել ավելի քան 6,1 հազար մարդ, որոնցից ինժեներներ՝ 515, գյուղատնտեսներ՝ 749, բժիշկներ՝ 763, անասնաբույժ-զոոտեխնիկներ՝ 789, գիտության ու արվեստի աշխատողներ՝ 1617, կուսակցական ու խորհրդային աշխատողներ՝ 700-ից ավելի և այլն: Հայաստանի խուլ, անցյալում աշխարհից մեկուսացված անկյուններն այժմ պատած են ռադիոյի և հեռախոսների ցանցով: Հեռագրական-հեռախոսային գծերի յերկարությունը մինչև 1937 թ. հունվարի մեկը յեղել է 13,6 հազար կիլոմետրից ավելի: Հայաստանում գործում են կապի ավելի քան 171 հիմնարկ, ավելի քան 5,5 հազար հեռախոսային կետեր, 19 հազար էլեկտրոլարային և ավելի քան 1,3 հազար եթերային ռադիոընդունիչներ, որոնք մեր յերկրի բոլոր

բնակավայրերը կապում են միմյանց հետ: Նամակները, թերթերը շրջան են փոխադրվում, գյուղ հասցվում ավտոմեքենաների և ինքնաթիռների միջոցով:

***

Այս նվաճումները հայ աշխատավորությունը ձեռք է բերել իր սիրելի բարեկամ և մեծ ուսուցիչ ընկեր ՍՏԱԼԻՆԻ ղեկավարության, ցուցումների և հոգատարության շնորհիվ, ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ մարտական կուսակցության ղեկավարության շնորհիվ, Վրաստանի, Ադրբեջանի ժողովուրդների յեղբայրական և հատկապես՝ ռուս մեծ ժողովրդի օգնության շնորհիվ:

Հայաստանի աշխատավորության ձեռք բերած նվաճումներն ավելի մեծ կլինեյին, յեթե հայ ժողովրդի վոխերիմ թշնամիները՝ հակահեղափոխական-տրոցկիստական, բուխարինյան, բուրժուա-նացիոնալիստական, դաշնակ-ֆաշիստական սրիկաները՝ Խանջյանը, Ամատունին և նրանց վոհմակը չվնասեյին հայ ժողովրդին, չծծեյին նրա արյունը: Այդ իժերը ցանկանում եյին քայ-



քայել Հայաստանը, անջատել այն Խորհրդային մեծ Միությունից և այն դարձնել ֆաշիստական յերկրների գաղութ: Դաշնակ-ֆաշիստների այդ վոհմակը ցանկանում եր Հայաստանում վերականգնել դաշնակ-ֆաշիստների իշխանությունը, բուրժուական կարգերը: Նրանց, հայ ժողովրդի այդ յերդվյալ թշնամիներին, չհաջողվեց իրագործել իրենց նենգ պլանները: Չհաջողվեց, վորովհետև հայ ժողովրդին, նրա վերածնությունը հետևում եր և հետևում է նրա ամենամոտ բարեկամ, մեր սիրելի հայր մեծ ՍՏԱԼԻՆԸ:

Ժողովրդի անարգ թշնամիները, ֆաշիզմի արյունախում գամփռները, տրոցկիստական, բուխարինյան և ազգայնական-ֆաշիստական բանդիտները, մարդասպանները, լրտեսները, պատերազմի հրձիգները, փորձում եյին խորհրդային ծաղկած հայրենիքը, նույն թվում և Հայաստանը հանձնել ֆաշիստներին, իմպերիալիստական գիշատիչներին, ստրկացնել մեր յերկրի բանվոր դասակարգին և աշխատավորությանը: Բայց ֆաշիզմի գամփռների, ժողովրդի այդ անարգ թշնամիների, այդ բան-

*դիմների, պրովոկատորների, մարդասպանների, ֆաշիզմի շղթայված շների յերազները յերբեք չեն իրականանա:*

*Խորհրդային Միության ժողովուրդները ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կուսակցության ղեկավարությամբ, մեծ ՍՏԱԼԻՆԻ գլխավորությամբ, մարտականորեն պաշտպանում են իրենց սքանչելի սոցիալիստական հայրենիքն արտաքին և ներքին թշնամիներից, միջազգային կապիտալի բանդաներից:*

*Ամուր ու անխորտակելի յե Խորհրդային Միության ժողովուրդների բարեկամությունը: Տաջիկստանի և Թուրքմենստանի առաջավոր կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների՝ կուսակցության ու կառավարության ղեկավարների հետ ունեցած խորհրդակցությանն ընկեր* Ստալինն *ասում էր՝* «Ներկա խորհրդակցությունը ցայտուն ապացույց է հանդիսանում այն բանի, վոր ԽՍՀՄ ժողովուրդների միջև յեղած անվստահությունը վաղուց արդեն վերջ է տրված և անվստահությունը փոխարինվել է փոխադարձ լիակատար վստահությամբ, վոր ԽՍՀՄ ժողովուրդների միջև բարեկամությունն աճում է ու ամրապնդվում: Այդ, ընկերներ, ամենաարժեքավորն է այն բոլորի մեջ, ինչ տվել է մեզ բոլշևիկյան ազգային քաղաքականությունը:

Իսկ ԽՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը մեծ ու լուրջ նվաճում է: Վորովհետև, քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր յերկրի ժողովուրդները կլինեն ազատ ու անպարտելի: Վոչ վոք սարսափելի չի մեզ համար, վոչ ներքին, վոչ արտաքին թշնամիները, քանի դեռ այդ բարեկամությունն ապրում ու շարունակվում է»:

# „ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ“

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂ ԽՄԲԱԿԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ՊԼԱՆԸ

### ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ 17 ՏԱՐՎԱ ԸՆԹԱՑՔՈՒՄ

### ԱՌԱՋԻՆ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է: ԽՍՀՄ-ը՝ բազմազգ պետություն, վորպես—ժողովուրդների միասնական ընտանիք: Ստալինյան Սահմանադրությունը՝



ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի արդյունքն է:

Ցարիզմի գաղութային գիշատիչ քաղաքականությունն ազգային ծայրամասերում. սովն ու աղքատությունն աշխատավորների լայն մասսաների բաժինն էր ցարական Ռուսաստանում:

Ցարիզմի, վորպես ժողովուրդների բանտի վոչնչացումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության կողմից: Ազնվական-կալվածատիրական և կապիտալիստական ճնշման ու շահագործման տապալումը:

Ժողովուրդների Ստալինյան անխորտակելի բարեկամության հաստատումը ԽՍՀՄ-ում՝ Լենինյան-Ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության իրականացման հետևանքով:

Դաշնակների ավազակային-կողոպտիչ քաղաքականությունը Հայաստանում. ժողովրդական տնտեսության քայքայումը և կուլտուրայի անկումը Հայաստանում՝ դաշնակների տիրապետության հետևանքով:

Լենինի—Ստալինի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի ոգնությամբ Հայաս—

տանի աշխատավորների ազատագրումը յեվրոպական իմպերիալիստների ճնշումից:

Խորհրդային Հայաստանի սոցիալիստական արդյունաբերության աճումը, արդյունաբերության նոր ճյուղեր,— Կաուչուկ, Քիմկոմբինատ, Տեքստիլ Փաբրիկա, պղնձի արդյունաբերություն, Արթիկտուֆ, Ցեմենտի գործարան. թեթև ու տեղական արդյունաբերության վերելքը:

Նոր, վորակյալ կադրերի դաստիարակումը. ստախանովյան շարժման արմատավորումն ու զարգացումը:

## ՅԵՐԿՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Կոլտնտեսային կարգի հաղթանակն ու ամրապնդումը Հայաստանում՝ Գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության իրականացման հիման վրա: Կոլտնտեսային գյուղացիության ունևոր, կուլտուրական կյանքը: Կոլտնտեսային մասսաների նյութական բարեկեցության հետագա աճումը. տասնյակ միլիոնատեր կոլտնտեսությունները Հայաստանում. գյուղատնտեսության մեխանիզացիայի ապահովումը (ՄՏԿ-ների լայն ցանց, խորհ-



տնտեսությունների շինարարություն և այլն). տեխնիկական կուլտուրաների մշակության՝ բամբակագործության, խաղողագործության, այգեգործության, ծխախոտագործության զարգացումը և հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացումը: Սոցիալիստական կուլտուրայի, գրականության ու արվեստի զարգացումը Հայաստանում: Դպրոցների, ԲՈՒՀԵՐ-ի և գիտական հիմնարկների ցանցի աճումը:

Առողջապահության զարգացումը. բուժպրոֆիլակտիկ հիմնարկների վիթխարի աճը: Սանատորիաների, հանգստյան տների և այլնի աճը:

Ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ և անմիջական օգնությամբ Հայաստանի բոլշևիկները ջախջախեցին հայ ժողովրդի ամենավոխերիմ թշնամիներին՝ նողկալի դաշնակցական, տրոցկիստական-բուխարինական, բուրժուա-նացիոնալիստական դավաճաններին, վորոնք փորձում եյին վիժեցնել հաղթական սոցիալիստական շինարարությունը և հայ ժողովրդը վերադարձնել իմպե-

ռիալիստական պաղութային ճնշման լծի տակ։

Սոցիալիստական շինարարության հաղթանակները Խորհրդային Հայաստանում՝ վորպես արդյունք Հայաստանի բոլշևիկների կողմից լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության, ՀամԿ(բ)Կ Ստալինյան Կենտրոնական Կոմիտեյի դիրեկտիվի և մեծ Ստալինի անձնական ցուցումների անշեղ կիրառման։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՏԱԼԻՆ.— Զեկուցում Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարում. 2-րդ բաժին։

ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան հեղափոխության քսանամյակի առթիվ։

ԲԵՐԻԱ.— Ժողովուրդների միասնական ընտանիքը։ Առանձին բրոշյուրով, կամ «Պրավդա», 7 նոյեմբերի, 1937 թ.։

ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ՝ Երևանի Ստալինյան օկրուգի աշխատավորների ներկայացուցիչների նախընտրական ժողովում. «Խորհրդային Հայաստան», 11 դեկտեմբերի, 1937 թ.։

Թվեր և փաստեր Հայաստանի խորհրդայնացման 17-ամյակի առթիվ. «Ագիտատորի բլոկնոտ»։



## ԼՐԱՑՈՒՑԻՉ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ.— «Բանվոր դասակարգը և ազգային հարցը» (Երկեր, հատոր 16, եջ՝ 388—391, 3-րդ հրատ.)։

ԼԵՆԻՆ.— «Բանվորների այլասերումը նուրբ նացիոնալիզմով» (Երկեր, հատ. 18, եջ՝ 360—362, 3-րդ հրատարակություն)։

ՍՏԱԼԻՆ.— Լենինիզմի հիմունքների մասին. գլուխ 6-րդ—«Ազգային հարցը» («Լենինիզմի հարցերը», եջ՝ 43—50, 10-րդ հրատարակություն)։

ՍՏԱԼԻՆ.— Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ երկերեսանիներին լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին (Կուսհրատ, 1937 թ.)։

ՍՏԱԼԻՆ.— «Ազգային մոմենտները կուսակցական և պետական շինարարության մեջ» (զեկուցում ՀամԿ(բ)Կ 12-րդ համագումարում. «Մարքսիզմը և ազգային գաղութային հարցը» ժողովածու)։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ՅԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՈՐԳԱՆՆԵՐԸ

## ՅԵՐՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը՝ բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն (Սահմանադրություն, հոդվ. 1-ին):

Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Գերագույն Խորհուրդը՝ Հայկական ԽՍՀ պետական իշխանության բարձրագույն որգան:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահությունը, ժողովրդական կոմիսարների Խորհուրդը և աշխատավորների պատգամավորների Խորհուրդների տեղին որգանները:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհուրդը՝ վորպես բարձրագույն որենսդրական իշխանություն: Աշխատավորների պատգամավորների Խորհուրդները՝ վորպես սոցիալիստական պետության քաղաքական հիմք:

Հանրային սոցիալիստական սեփականության յերկու ձևերը: Սոցիալիստական սիս-



տեմը՝ վորպես Հայկական ԽՍՀ ժողովրդական անտեսության մեջ անբաժանելիորեն տիրապետող:

Խորհրդային Հայաստանը ԽՍՀՄ 11 միութենական հանրապետություններից մեկն է: Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական կառուցվածքը: ԽՍՀՄ-ի մեջ մտնող միութենական հանրապետությունները, ավտոնոմ հանրապետությունները, ավտոնոմ մարզերը և ազգային ոկրուգները (ըստ ԽՍՀՄ աշխարհագրական քարտեզի):

Հայկական Խորհրդային Սոցիալիստական հանրապետության պետական կառուցվածքը:

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԽՍՀՄ Սահմանադրությունը (Հիմնական Որենքը)—գլուխ 1-ին, 2-րդ, 3-րդ, 4-րդ:

Հայկական ԽՍՀ Սահմանադրությունը (Հիմնական Որենքը) գլուխ 1-ին, 2-րդ, 3-րդ, 4-րդ:

ՍՏԱԼԻՆ.—Զեկուցում Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարում (3-րդ բաժին):

ՄՈԼՈՏՈՎ.— Սոցիալիզմի Սահմանադր-

րությունը (3-րդ բաժին՝ ԽՍՀՄ-ն և խաղաղությունը ժողովուրդների միջև):

ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ Յերևան քաղաքի Ստալինյան ոկրուգի աշխատավորների ներկայացուցիչների նախընտրական ժողովում. («Խորհրդային Հայաստան», 11 դեկտեմբերի):

### ԼՐԱՑՈՒՑԻՉ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ.— «Պետություն և հեղափոխություն» (առանձին բրոշյուրով):

ՍՏԱԼԻՆ.— «Ազգային մոմենտները կուսակցական և պետական շինարարության մեջ» («Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը» ժողովածու):

ԿԱԼԻՆԻՆ.— «Ինչ տվեց խորհրդային իշխանությունն աշխատավորներին» (առանձին բրոշյուր հայերեն լեզվով):

## ԸՆԴՀԱՆՈՒՐ, ՀԱՎԱՍԱՐ, ՈՒՂՂԱԿԻ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ՝ ԳԱՂՏՆԻ (ՓԱԿ) ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՄԲ (ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ)

### ՉՈՐՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Բուրժուական դեմոկրատիան՝ հարուստների համար՝ բուրժուազիայի տիրապետու-



թյան դիմակավորում: Աշխատավորների իրավունքների սահմանափակումը բուրժուական սահմանադրություններում (ընդհանուր ընտրական իրավունքի սահմանափակումն ըստ տարիքի, սեռի, դավանության, ազգային պատկանելության, դավանանքի և այլ հատկանիշների): Բուրժուական դեմոկրատիայի ձևական բնույթը:

Բուրժուական սահմանադրությունների էությունը:

Ստալինյան Սահմանադրության դեմոկրատիզմը՝ վորպես միակ, իսկապես հետևողական, համաժողովրդական դեմոկրատիզմ ամբողջ աշխարհում և մարդկության ամբողջ պատմության մեջ:

Ստալինը ԽՍՀՄ Սահմանադրության առանձնահատկությունների մասին:

Որենքով տրամադրված իրավունքների օգտագործման անհնարինությունն աշխատավորների լայն մասսաների կողմից կապիտալիզմի պայմաններում. (շահագործման ծանր լուծը, աղքատությունը, գործազրկությունը, ագիտացիայի բոլոր միջոցները կապիտալիզմի ձեռքում գտնվելը և այլն):

րությունը (3-րդ բաժին՝ ԽՍՀՄ-ն և խաղաղությունը ժողովուրդների միջև)։

ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ Երևան քաղաքի Ստալինյան օկրուգի աշխատավորների ներկայացուցիչների նախընտրական ժողովում. («Խորհրդային Հայաստան», 11 դեկտեմբերի)։

## ԼՐԱՑՈՒՑԻՉ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ.— «Պետություն և հեղափոխություն» (առանձին բրոշյուրով)։

ՍՏԱԼԻՆ.— «Ազգային մոմենտները կուսակցական և պետական շինարարության մեջ» («Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը» ժողովածու)։

ԿԱԼԻՆԻՆ.— «Ինչ տվեց խորհրդային իշխանությունն աշխատավորներին» (առանձին բրոշյուր հայերեն լեզվով)։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ, ՀԱՎԱՍԱՐ, ՈՒՂՂԱԿԻ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ՝ ԳԱՂՏՆԻ (ՓԱԿ) ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՄԲ (ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ)

## ՉՈՐՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Բուրժուական դեմոկրատիան՝ հարուստների համար՝ բուրժուազիայի տիրապետության



դիմակավորում։ Աշխատավորների իրավունքների սահմանափակումը բուրժուական սահմանադրություններում (ընդհանուր ընտրական իրավունքի սահմանափակումն ըստ տարիքի, սեռի, դատվածության, ազգային պատկանելության, դավանանքի և այլ հատկանիշների)։ Բուրժուական դեմոկրատիայի ձևական բնույթը։

Բուրժուական սահմանադրությունների էությունը։

Ստալինյան Սահմանադրության դեմոկրատիզմը՝ վորպես միակ, իսկապես հետևողական, համաժողովրդական դեմոկրատիզմ ամբողջ աշխարհում և մարդկության ամբողջ պատմության մեջ։

Ստալինը ԽՍՀՄ Սահմանադրության առանձնահատկությունների մասին։

Որենքով ամրագրված իրավունքների օգտագործման անհնարինությունն աշխատավորների լայն մասսաների կողմից կապիտալիզմի պայմաններում. (շահագործման ծանր լուծը, աղքատությունը, գործազրկությունը, ագիտացիայի բոլոր միջոցները կապիտալիզմի ձեռքում գտնվելը և այլն)։

*Նյութական պայմանների առկայությունը ԽՍՀՄ-ում՝ հետևողական սոցիալիստական դեմոկրատիզմի իրականացման համար: Մարդու կողմից մարդու շահագործման վոչնչացումը. աշխատանքի, հանգստի, կրթության և ծերության կամ հիվանդության ժամանակ ու աշխատունակությունը կորցնելու ժամանակ՝ նյութական ապահովման մեծ իրավունքները:*

*Ունևոր կյանքի ծաղկումը և Հայաստանի աշխատավորների կուլտուրան:*

*Հավասար ընտրական իրավունք. ինչի՞ մեջ է արտահայտվում այն: Հայկական ԽՍՀ Սահմանադրության 111-րդ հոդվածը և «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 3-րդ հոդվածը հավասար ընտրությունների մասին:*

*Ուղղակի ընտրական իրավունքը Հայկական ԽՍՀ-ում. ինչի՞ մեջ է արտահայտվում այն: Բազմաստիճան ընտրությունները նախկին սահմանադրությամբ և դրա վերացումը նոր Սահմանադրության մեջ:*

*Գաղտնի (փակ) քվեարկություն. ինչո՞ւմն է նրա նշանակությունը: Առաջ գոյություն ունեցող բաց ընտրությունների վերացումը:*



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ԽՍՀՄ Սահմանադրությունը*— *գլուխ* 10-11:

*Հայկական ԽՍՀ Սահմանադրությունը*— *գլուխ* 8—9:

*Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը* — *գլուխ առաջին*:

*ՍՏԱԼԻՆ.— Զեկուցում Խորհուրդների Համամիութենական Արտակարգ* 8-*րդ համագումարում* (1—3 *գլուխներ*):

*ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշումը՝ Կանանց Միջազգային Կոմունիստական որվա՝ մարտի* 8-*ի մասին*:

*ՎԻՇԻՆՍԿԻ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը* (*հարցերով և պատասխաններով—գլուխ առաջին*):

*ԼԵՆԻՆ.— Զեկուցում և թեզիսներ բուրժուական հեղափոխության ու պրոլետարական դիկտատուրայի մասին*:

*ՍՏԱԼԻՆ.— Զրույց Ռոյ Հուարդի հետ*:

*ՄՈԼՈՏՈՎ.— Զեկուցում Խորհուրդների* 7-*րդ համագումարում՝ ԽՍՀՄ Սահմանադրության մեջ կատարվելիք փոփոխությունների մասին* (2-*րդ գլուխ*):

ԿԱԼԻՆԻՆ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը և Խորհուրդների խնդիրները (առաջին մաս):

1924 Թ. Սահմանադրությունը:— Գլուխ 3-րդ:

# ԻՆՉՊԵՍ ԵՆ ԿԱԶՄՎՈՒՄ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ ՅԵՎ ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԵՐԸ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգները: Ստալինյան Սահմանադրության ընտրական օրենքի նշանակությունը Հայկական ԽՍՀ աշխատավորների իրավունքների պաշտպանման գործում: Ի՞նչպես են կազմվում ընտրական տեղամասերը՝ քաղաքում և գյուղում: Ընտրական տեղամասերը կազմելու արտադրական սկզբունքը նախկին սահմանադրության մեջ և տերիտորիալ սկզբունքը նոր՝ Ստալինյան Սահմանադրության մեջ:

Նոր ընտրական օրենքն ի՞նչպես է հոգ



տանում հեռավոր ու լեռնային շրջանների ընտրողների, զորամասերում, սանատորիաներում, հանգստյան տներում, ծննդատներում, հիվանդանոցներում, հաշմանդամների տներում և այլ վայրերում գտնվող ընտրողների մասին:

Ինչպես են կազմվում ընտրական օկրուգները և ընտրական տեղամասերը:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԽՍՀՄ Սահմանադրությունը — գլուխ 3-րդ:

Հայկական ԽՍՀ Սահմանադրությունը— գլուխ 3-րդ:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը — գլուխ 3—4-րդ:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը— գլուխ 3—4-րդ:

ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում—դեկտեմբեր, 1937 թ.:

ԿԱԼԻՆԻՆ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը և Խորհուրդների խնդիրները:

ՎԻՇԻՆՍԿԻ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությու-

նը (հարցերով և պատասխաններով) գլուխ 3-4-րդ:

## ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ, ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ ԱՌԱՋԱԴՐԵԼՈՒ ԿԱՐԳԸ

### ՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կենտրոնական ընտրական հանձնաժողովը:

Օկրուգային ընտրական հանձնաժողովները և տեղամասային ընտրական հանձնաժողովները, նրանց կազմը, ֆունկցիաները և հաստատվելու կարգը: Ընտրողների ցուցակները կազմելու կարգը, ընտրությունների հաջող անցկացումն ապահովելու համար:

Ո՞վ է մտցվում և ո՞վ չի մտցվում ընտրողների ցուցակների մեջ: Ինչպես է ընտրողների ցուցակների մեջ մտցվում այն քաղաքացին, որը փոխում է իր բնակավայրը: Բողոքներ ընտրողների ցուցակներից հանելու կամ ընտրողների ցուցակների մեջ սխալ կերպով մտցնելու մասին:

Թեկնածուների առաջադրման և ցուցակագրման կարգը: Ո՞ր կազմակերպությունները իրավունք ունեն թեկնածուներ



առաջադրելու Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի համար:

Թեկնածուների ազգանունները հրապարակելու կարգը և ժամկետները: Կոմունիստների և անկուսակցականների ամենասերտ կապը Գերագույն Խորհրդի պատգամավորների թեկնածուներ առաջադրելիս:

ՀամԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեի դիմումը բոլոր ընտրողներին՝ կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի մասին: Թեկնածուների օգտին անարգել ագիտացիա անելու իրավունքը ԽՍՀՄ Սահմանադրության 125-րդ հոդվածի և Հայկական ԽՍՀ Սահմանադրության 100-րդ հոդվածի համաձայն:

Խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների և ցույցերի ազատության ապահովումը՝ «աշխատավորների շահերին համապատասխան, սոցիալիստական կարգն ամրապնդելու նպատակով»:

Կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի թեկնածուների փայլուն հաղթանակը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ժամանակ՝ որպես ՀամԿ(բ)Կ շուրջը խորհրդային ժողովրդի համախմբվածության, մեծ Ստալինի նը-

կատմամբ նրա անձնազոհ նվիրվածության ու սիրո պայծառ արտահայտություն:

Կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի հաղթանակի մեջ «ամբողջ աշխարհը տեսավ Խորհրդային Միության ուժը. տեսավ ու զգաց, թե ի՛նչ է իրենից ներկայացնում Խորհրդային ազատ ժողովուրդը, ի՛նչպիսին է նրա կազմակերպվածությունը, գիտակցությունն ու ակտիվությունը»:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԽՍՀՄ Սահմանադրությունը — գլուխ 10—11-րդ:

Հայկական ԽՍՀ Սահմանադրությունը— գլուխ 8—9-րդ:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը — գլուխ 2—5—6-րդ:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը — գլուխ 2—5—6-րդ:

ՍՏԱԼԻՆ — Ճառ՝ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1937 թ. դեկտեմբերին:



ՄԻԿՈՅԱՆ — Ճառ՝ Երևան քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դիմումը բոլոր ընտրողներին («Խորհրդային Հայաստան» և «Կոմունիստ», 7 դեկտեմբերի, 1937 թ.):

ՀԱՄԿԽ-ի դիմումը բոլոր ընտրողներին («Խորհրդային Հայաստան», «Կոմունիստ»):

«Պրավդա» — «Կոմունիստների և անկուսակցականների բլոկի լիակատար հաղթանակը» (14 դեկտեմբերի, 1937 թ.):

«Պրավդա» — «Խորհրդային Միության ժողովուրդների ցնծությունը» (16 դեկտեմբերի, 1937 թ.):

## ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ ՅԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ՎՈՐՈՇԵԼԸ

## ՅՈԹԵՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների օրն ու ժամը սահմանելու կարգը: Ծրար, քվետուփ, ընտրական բյուլետենի ձևը, բյուլետենը լրացնելու չենքն ընտրական տեղամասում և ծրարը

քվեատուփի մեջ գցելու չենքը:

Անհրաժեշտ է, որ ընտրողն անձամբ ներկայանա ընտրական հանձնաժողովին և տա իր ձայնը:

Ընտրական հանձնաժողովում ընտրական բյուլետեն ու ծրար տալու կարգը:

Ընտրական բյուլետենը և ծրարը լրացնելու կարգը:

Ընտրական բյուլետենը «բյուլետենը լրացնելու հատուկ սենյակում» լրացնելու կարգը:

Ինչպես են լրացնում բյուլետենն անգրագետները, հաշմանդամները:

Բյուլետենը փակելը ծրարում և քվեատուփի մեջ իջեցնելն «այն սենյակում, որտեղ գտնվում է տեղամասային ընտրական հանձնաժողովը»:

Ընտրական բյուլետենների հիման վրա ձայները հաշվելու և ըստ ընտրական տեղամասի քվեարկության արդյունքները հայտարարելու կարգը:

Ո՞ր բյուլետենն է անվավեր ճանաչվում:

Տեղամասային ընտրական հանձնաժողովների արձանագրությունների հիման վրա օկրուգային ընտրական հանձնաժողովում ձայները հաշվելու կարգը:



Օկրուգում ընտրված թեկնածվի հայտարարման կարգը: Ընտրվելու համար ձայների բացարձակ մեծամասնություն ստանալու անհրաժեշտությունը:

Օկրուգի ընտրողների կեսից ավելի մասի՝ ընտրություններին ներկայանալու անհրաժեշտությունը՝ ընտրությունները վավերական ճանաչելու համար:

Թեկնածուների վերաքվեարկման կարգը՝ ընտրությունները չեղյալ հայտարարվելու դեպքում: Բռնության, խաբեյության, սպառնալիքի, կաշառատվության անթույլատրելիությունն ընտրությունների ժամանակ:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը— գլուխ 7—8-րդ:

ՎԻՇԻՆՍԿԻ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը (հարցերով և պատասխաններով)—գլուխ 8-րդ:

ԿԱԼԻՆԻՆ.— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը և Խորհուրդների խնդիրները: («Քվեարկության կարգի մասին, ընտրությունների արդյունքները որոշելու մասին» բաժինը):

# ՀԱՆՈՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՈՒ ԱՆՑԿԱՑՄԱՆ

## ՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Կուսակցության և ժողովրդի կողմից ջախջախված թշնամիների՝ դեռևս չմերկացված՝ թաքնված բեկորները՝ տրոցկիստական-բուխարինական, դաշնակցական-բուրժուա-նացիոնալիստական ստոր ճիվաղները կփորձեն խանգարել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների նախապատրաստումն ու անցկացումը: Իրենց նողկալի պայքարում նրանք կփորձեն ոգտագործել մարդկանց գիտակցության մեջ յեղած կրոնական և կապիտալիզմի այլ մնացորդները: Կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների խնդիրն է՝ ավելի լայնորեն ծավալել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքն ընտրողների բոլոր խավերի մեջ: Յուրաքանչյուր ընտրող պետք է ստույգ գիտենա Ստալինյան Սահմանադրության ընտրական որենքը, թեկնածուների առաջադրման և ցուցակա-



գրման, ընտրողների ցուցակները կազմելու կարգը, ինչպես նաև քվեարկության տեխնիկան՝ ե՛լ ավելի բարձրացնելու հեղափոխական զգաստությունը, վորպեսզի կարողանա մերկացնել թշնամական ագիտացիան, թշնամու նողկալի վոտնձգությունները, ինչպիսի դիմակի տակ էլ վոր նա հանդես գա: Անողոքաբար վոչնչացնել թշնամական ստոր թափթփուկներին՝ արյունարբու ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինական կատաղի շներին: Ե՛լ ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկների կուսակցության շուրջը, Ստալինի շուրջը, ե՛լ ավելի ամրապնդել կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկը, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհուրդն ուղարկել հայրենիքի լավագույն զավակներին ու դուստրերին, վորոնք մինչև վերջ նվիրված են Լենինի-Ստալինի մեծ գործին:

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկեր Ստալինի ճառը Մոսկվայի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական խորհրդակցությանը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշումը Կանանց

Միջազգային կոմունիստական օրվա՝ մարտի 8-ի մասին:

Ընկերներ Մոլոտովի, Կագանովիչի, Վորոշիլովի, Յեժովի, Կալինինի, Միկոյանի, Զուբարի, Անդրեևի, Կոսիորի, Ժդանովի ճառերը ընտրողների նախընտրական խորհրդակցություններում և ժողովներում—1937 թ. նոյեմբեր–դեկտեմբերին:

ՅԵ. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ.— Հակակրոնական պրոպագանդի խնդիրները — ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Կուսհրատ, 1937 թ.:

Հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկի» դատավարության նյութերը:



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## „ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ“ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂ ԽՄԲԱԿՆԵՐԻ ՅԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՑԱՆՑԻ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԼԵՆԻՆ.— Թեզիսներ և զեկուցում բուրժուական դեմոկրատիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի մասին. Յերկեր, հատ. 24, եջ՝ 7—20:

ՍՏԱԼԻՆ.— Զեկուցում Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարում:

ՍՏԱԼԻՆ.—Զրույց Ամերիկյան «Սկրիպս-Հուարդ–Նյուս պեյպերս» լրագրային միավորման նախագահ Ռոյ Հուարդի հետ:

ՍՏԱԼԻՆ.— Պատասխան ընկեր Իվանովին:

ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվայի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական խորհրդակցությանը:

ԽՍՀՄ Սահմանադրությունը։

Հայկական ԽՍՀ Սահմանադրությունը։

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը։

Լ. Պ. ԲԵՐԻԱ — Ժողովուրդների միասնական ընտանիքը։

ՄԻԿՈՅԱՆ — Ճառ՝ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական խորհրդակցությանը («Խորհրդային Հայաստան», № 283, 11 դեկտեմբերի, 1937 թ.)։

ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


ԹՈՒՐՔՄԵՆԱԿ. ԽՍՀ
ԿԻՐԳԻԶԱԿԱՆ ԽՍՀ
ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ
ՏԱՋԻԿԱԿԱՆ ԽՍՀ
ԼԵՌՆ. ԲԱԴԱԽՇԱՆԻ ԱՎՏ. ՄԱՐԶ
ՎՐԱՑԱԿԱՆ ԽՍՀ
ԱԲԽԱԶԱԿԱՆ ԱԽՍՀ
ԱՋԱՐԱԿԱՆ ԱԽՍՀ
ՀԱՐԱՎ-ՕՍԵԹԱԿ. ԱՎՏ. ՄԱՐԶ.
ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԽՍՀ
ՆԱԽԻՋԵՎԱՆԻ ԱԽՍՀ
ԼԵՌՆ. ՂԱՐԱԲԱՂԻ ԱՎՏ. ՄԱՐԶ
ՂԱԶԱԽԱԿԱՆ ԽՍՀ
ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԽՍՀ
ԽՍՀՄ
ՈՒԶԲԵԿԱԿԱՆ ԽՍՀ
ՌՍՖՍՀ
ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ԽՍՀ
ՄԱՐԶԵՐ
ԱԿՏՅՈՒԲԻՆՍԿԻ
ԱԼՄԱ-ԱԹԱՅԻ
ԱՐԵՎԵԼՅԱՆ ՂԱԶԱԽՍՏԱՆԻ
ԳՈՒՐԵՎԻ
ԱՐԵՎՄՏՅԱՆ ՂԱԶԱԽՍՏԱՆԻ
ԿԱՐԱԳԱՆԴԱՅԻ
ԿԶԻԼ-ՕՐԴԱՅԻ
ԿՈՍՏԱՆԱՅԻ
ՊԱՎԼՈԴԱՐԻ
ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՂԱԶԱԽՍՏԱՆԻ
ՀԱՐԱՎԱՅԻՆ ՂԱԶԱԽՍՏԱՆԻ
ԿԱՐԱ-ԿԱԼՊԱԿԱԿԱՆ ԱԽՍՀ
ԲՈՒԽԱՐԱՅԻ ՄԱՐԶ
ՍԱՄԱՐՂԱՆԴԻ ՄԱՐԶ
ԴԱՇՔԵՆԴԻ ՄԱՐԶ
ՖԵՐԳԱՆԱՅԻ ՄԱՐԶ
ԽՈՐԵԶՄԻ ՄԱՐԶ
ՎԻՏԵԲՍԿԻ ՄԱՐԶ.
ԳՈՄԵԼԻ ՄԱՐԶ.
ՄԻՆՍԿԻ ՄԱՐԶ.
ՄՈԳԻԼԵՎԻ ՄԱՐԶ
ՊՈԼԵՍԿԻ ՄԱՐԶ
ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ԱԽՍՀ
ՄԱՐԶԵՐ
ՎԻՆՆԻՑԱՅԻ
ԴՆԵՊՐՈՊԵՏՐՈՎՍԿԻ
ԴՈՆԵՑԻ
ԺԻՏՈՄԻՐԻ
ԿԱՄԵՆԵՑ-ՊՈԴՈԼՍԿԻ
ԿԻԵՎԻ
ՆԻԿՈԼԱՅԵՎԻ
ՕԴԵՍԱՅԻ
ՊՈԼՏԱՎԱՅԻ
ԽԱՐԿՈՎԻ
ՉԵՐՆԻԳՈՎԻ
ԱԼՏԱՅԻ ԵՐԿՐԱՄԱՍ
ՕՅՐՈՏԱԿԱՆ ԱՎՏ. ՄԱՐԶ
ՀԵՌԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԵՐԿՐԱՄԱՍ
ՀՐԵԱԿԱՆ ԱՎՏ. ՄԱՐԶ
ԿՐԱՍՆՈԴԱՐՍԿԻ ԵՐԿՐԱՄԱՍ
ԱԴԻԳԵՅԱԿԱՆ ԱՎՏ. ՄԱՐԶ
ԿՐԱՍՆՈՅԱՐՍԿԻ ԵՐԿՐԱՄԱՍ
ԽԱԿԱՍԱԿԱՆ ԱՎՏ. ՄԱՐԶ
ՕՐՋՈՆԻԿԻՁԵԻ ԵՐԿՐԱՄԱՍ
ԿԱՐԱՉԱՅԱԿԱՆ ԱՎ. Մ.
ՉԵՐԿԵՍԱԿԱՆ ԱՎՏ. ՄԱՐԶ.
ԱՐԽԱՆԳԵԼՍԿԻ ՄԱՐԶ
ՎՈԼՈԳԴԱՅԻ ՄԱՐԶ
ՎՈՐՈՆԵԺԻ ՄԱՐԶ
ԳՈՐԿՈՒ ՄԱՐԶ
ԻՎԱՆՈՎՈՅԻ ՄԱՐԶ
ԻՐԿՈՒՏՍԿԻ ՄԱՐԶ
ԿԱԼԻՆԻՆԻ ՄԱՐԶ
ԿԻՐՈՎԻ ՄԱՐԶ
ԿՈՒՅԲԻՇԵՎԻ ՄԱՐԶ
ԿՈՒՐՍԿԻ ՄԱՐԶ
ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ՄԱՐԶ
ՄՈՍԿՎԱՅԻ ՄԱՐԶ
ՆՈՎՈՍԻԲԻՐՍԿԻ ՄԱՐԶ
ՕՄՍԿԻ ՄԱՐԶ
ԹԱԹԱՐԱԿԱՆ ԱԽՍՀ
ԲԱՇԿԻՐԱԿԱՆ ԱԽՍՀ
ԴԱՂՍՏԱՆԻ ԱԽՍՀ
ԲՈՒՐՅԱԹ-ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԱԽՍՀ
ԿԱԲԱՐԴԻՆՈ-ԲԱԼԿԱՐԱԿԱՆ ԱԽՍՀ
ԿԱԼՄԻԿԱԿԱՆ ԱԽՍՀ
ԿԱՐԵԼԱԿԱՆ ԱԽՍՀ
ԿՈՄԻ ԱԽՍՀ
ՅԱԿՈՒՏԱԿԱՆ ԱԽՍՀ
ՂՐԻՄԻ ԱԽՍՀ
ՄԱՐԻԱԿԱՆ ԱԽՍՀ
ՄՈՐԴՎԱԿԱՆ ԱԽՍՀ
ՄԵՐՁՎՈԼԳՅԱՆ ԳԵՐ. ՄԱՆԱՑԻՆԵՐԻ ԱԽՍՀ
ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՕՍԵԹԱԿԱՆ ԱԽՍՀ
ՈՒԴՄՈՒՐՏԱԿԱՆ ԱԽՍՀ
ՉԵՉԵՆՈ-ԻՆԳՈՒՇԱԿԱՆ ԱԽՍՀ
ՉՈՒՎԱՇԱԿԱՆ ԱԽՍՀ
ՕՐԵՆԲՈՒՐԳԻ ՄԱՐԶ
ՕՐԼՈՎԻ ՄԱՐԶ
ՌՈՍՏՈՎԻ ՄԱՐԶ
ՌՅԱԶԱՆԻ ՄԱՐԶ
ՍԱՐԱՏՈՎԻ ՄԱՐԶ
ՍՎԵՐԴԼՈՎՍԿԻ ՄԱՐԶ
ՍՄՈԼԵՆՍԿԻ ՄԱՐԶ
ՍՏԱԼԻՆԳՐԱԴԻ ՄԱՐԶ
ՏԱՄԲՈՎԻ ՄԱՐԶ
ՏՈՒԼԱՅԻ ՄԱՐԶ
ՉԵԼՅԱԲԻՆՍԿԻ ՄԱՐԶ
ՉԻՏԱՅԻ ՄԱՐԶ
ՅԱՐՈՍԼԱՎԻ ՄԱՐԶ

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ՅԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

ПРОЛЕТАРИИ ВСЕХ СТРАН, СОЕДИНЯЙТЕСЬ

ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ԵՐԵՎԱՆ

ՔԱՂԱՔ ԼԵՆԻՆԱԿԱՆ

ԱԶԻԶԲԵԿՈՎԻ ՇՐՋԱՆ

ԱԼԱԳՅԱԶԻ ՇՐՋԱՆ

ԱԼԱՎԵՐԴՈՒ ՇՐՋԱՆ

ԱԽՏԱՅԻ ՇՐՋԱՆ

ԱՂԻՆԻ ՇՐՋԱՆ

ԱՄԱՍԻԱՅԻ ՇՐՋԱՆ

ԱՇՏԱՐԱԿԻ ՇՐՋԱՆ

ԱՊԱՐԱՆԻ ՇՐՋԱՆ

ԱՐԹԻԿԻ ՇՐՋԱՆ

ԲԱՍԱՐԳԵՉԱՐԻ ՇՐՋԱՆ

ԳՈՐԻՍԻ ՇՐՋԱՆ

ԴԻԼԻՋԱՆԻ ՇՐՋԱՆ

ԴՅՈՒԶՔԵՆԴԻ ՇՐՋԱՆ

ԶԱՆԳԻԲԱՍԱՐԻ ՇՐՋԱՆ

ԹԱԼԻՆԻ ՇՐՋԱՆ

ԻՋԵՎԱՆԻ ՇՐՋԱՆ

ԿԱՐԱԲԱՂԼԱՐԻ ՇՐՋԱՆ

ԿԱԼԻՆԻՆՈՅԻ ՇՐՋԱՆ

ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ՇՐՋԱՆ

ԿՈՏԱՅՔԻ ՇՐՋԱՆ

ԿՐԱՍՆՈՍԵԼՍԿԻ ՇՐՋԱՆ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆԻ ՇՐՋԱՆ

ՂԱՄԱՐԼՈՒԻ ՇՐՋԱՆ

ՂԱՓԱՆԻ ՇՐՋԱՆ

ՄԱՐՏՈՒՆՈՒ ՇՐՋԱՆ

ՄԻԿՈՅԱՆԻ ՇՐՋԱՆ

ՂՈՒԿԱՍՅԱՆԻ ՇՐՋԱՆ

ՆՈՐ-ԲԱՅԱԶԵՏԻ ՇՐՋԱՆ

ՇԱՄՇԱԴԻՆԻ ՇՐՋԱՆ

ՍԵՎԱՆԻ ՇՐՋԱՆ

ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՇՐՋԱՆ

ՍԻՍԻԱՆԻ ՇՐՋԱՆ

ՍՊԻՏԱԿԻ ՇՐՋԱՆ

ՍՏԵՓԱՆԱՎԱՆԻ ՇՐՋԱՆ

ՄԵՂՐՈՒ ՇՐՋԱՆ

ՎԱՂԱՐՇԱՊԱՏԻ ՇՐՋԱՆ

ԿՈԴՈՒ ՇՐՋԱՆ

ԿԱՐՄԻՐ ՇՐՋԱՆ

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Սովետ. Հայաստան»

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակությամբ

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։